1917 № 16—Ապրիլի 30 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

**ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ** տարեկան 4 *ռուբլի*, կէս տարուան 3 *ռուբլի*.
*Արտասահման*, տարեկան 5 *ռ.*, կէս տարուան 3 *ռ.*

**ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝** *Թիֆլիս, Արտաւազդեան հրապար.* № 7.
Հեռախօս № 29.

*Պոստի հասցէն.*—Тифлисъ, „Амбаваберъ". Tiflis, Rédaction du journal „Hambavaber".

**ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝** *տողին* **10** *կոպ.*
*Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2 բացի կիրակի և տօն օրերի*
*Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման կրճատման։*
*Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում։*
*Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ։*

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



---

*Կովկասի Հայոց Բարեգործական Ընկերութեան Խորհուրդը յայտնում է, թէ կիրակի, ապրիլի 30-ին, Ջիգրաշէնի եկեղեցում ժամի 12-ին նշանակուած է հանգուցեալ բարերար*

### ՎԱՍԻԼ ԱՒԱԳԵԱՆ ԴԱՒԹԵԱՆԻ

*մահուան քառասնօրեայ հոգեհանգիստը։*

---

*Կիրակի, ապրիլի 30-ին, Գորւայ քաղաքի ս. Ստեփաննոս եկեղեցու գաւթում, պատարագից յետոյ, ժամի 12-ին, կատարուելու է հանգ. գաղտնի խորհրդական*

### ՍՏԵՓԱՆ ՅՈՎՍԷՓԵԱՆ ԳՈՒԼԻՇԱՄԲԱՐԵԱՆԻ

*հոգեհանգիստը նրա գերեզմանի վրայ, որի մասին յայտնում է գիտութիւն հանգ. ազգականներին, բարեկամներին և ծանօթներին։*



ՎԱՍԻԼ ԱՒԱԳԵԱՆ ԴԱՒԹԵԱՆ
**Բարերար Կ. Հ. Բ. Ընկերութեան**

# ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԻՑ

*«Համբաւաբերի» այն բաժանորդները, որ մինչև հիմա չեն վճարել թերթի 1917 թուի բաժանորդագինը, խնդրում ենք մինչև յունիսի 1-ը անյապաղ ուղարկել։*

---

## ԱՇԽԱՏԱՒՈՐԱԿԱՆ ԽՄԲԵՐԻ ԱՆՀՐԱԺԵՇՏՈՒԹԻՒՆԸ

*(ՏԱՃԿԱՀԱՅԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՑՄԱՆԸ)*

*Արիւնահեղ ու երկարատև համաշխարհային պատերազմի ամենադառն բաժակը վիճակուեց հայ ազգին։*

*Եւ Կովկասում և Տաճկահայաստանում հայ ազգը կրեց ամենածանր հարուածները։*

*Կովկասահայութեան թարմ ու աշխատանքի ընդունակ ոյժերը, սկսած տասնևութ տարեկան հասակից համարեա մինչև ծերութեան շրջանը մտնող քառասուն ու հինգ տարեկանները տարուել են պատերազմի դաշտը. նրանց մի մասը արդէն զոհել է կեանքը հայրենիքի պաշտպանութեան համար, իսկ միւս մասը քաջարի կերպով կռիւ է մղում թշնամու դէմ։*

*Պատերազմի արհաւիրքները ռուսահայերի մէջ աւելի զգալի են գիւղացութեան համար։ Եւ այդ շատ հասկանալի է. գիւղացիներից զինուոր են գնացել աւելի մեծ թուով, գիւղացութիւնն առհասարակ ապրում է միայն այն միջոցներով, որը հայթայթում են նրա աշխատանքի ընդունակ անդամները։*

*Մենք կանգնած ենք ցնցող իրականութեան առաջ. հայ գիւղը այժմ զրկուած է աշխատաւոր ձեռքից, գիւղացու անտեսութիւնը սոսկալի կերպով քայքայւում է. նրա դաշտերը, այգիները, բանջարանոցները մնում են անմշակ և սպասում են աշխատաւորների։*

*Գիւղատնտեսական կեանքը կազմալուծւում է, նա գտնւում է մեծ ճգնաժամի մէջ։*

*Գիւղերում մնացած անչափահաս տղաները, կանայք և ծերունիները ֆիզիքապէս անկարող են կատարել գիւղական աշխատանքը՝ վարել ու սերմել հողերը, հնձել արտերը, հարել խոտերը, մշակել այգիներն ու պատրաստել ագարակները։*

*Այդ բոլորը կատարել վարձովի մշակներով անկարելի է. կողմնակի մշակներ դժուարութեամբ են գտնւում, գիւղացին չունի նիւթական միջոցներ և մշակավարձը հասել է առասպելական չափերի։ Հայ գիւղացութիւնը Կովկասում կործանման ճանապարհի վրայ է կանգնած։*

*Տաճկահայերի իրականութիւնը ներկայացնում է աւելի սոսկալի պատկեր. նրանց թշուառութիւնը, նրանց կրած հարուածները նոյն պատերազմից անասելի են։*

*Չը կայ աշխարհումս մի երկիր, մի ազգ, որ իւր դժբաղդութեամբ, իւր սև օրերով հաւասարուէր տաճկահայերին։ Տաճկահայութիւնն արիւնքամ եղաւ. նա տուեց հարիւրհազարաւոր զոհեր, նրա ամբողջ ունեցածը կողոպտուել, հրդեհուել և ոչնչացուել է, նրա հայրենիքը մի ծայրից մինչև միւս ծայրը ենթարկուել է սրի ու հրի։*

*Կենդանի մնացած ժողովուրդը մահից ազատուելու համար գաղթել է Կովկաս, բայց նա և ս գտնւում է շատ ծանր դրութեան մէջ, չը նայած ռուսահայերի, մանաւանդ հայ գիւղացութեան և կառավարութեան ցոյց տըւած օգնութեան։*

*Նպաստներով տարիների ընթացքում անկարելի է պահել իւր տեղից հանուած ժողովուրդ։ Ժողովուրդին ապրեցնողը եղել է և կը մնայ իրեն աշխատանքը։*

*Սա մի հասարակ և պարզ ճշմարտութիւն է։*

*Թէև տաճկահայերը զրկուած են իրենց տնից, տեղից, թէև նրանք գտնւում են օտարութեան մէջ, այնուամենայնիւ նրանցից աշխատանքի ընդունակները պէտք է աշխատեն, պէտք է գործադրեն իրենց ոյժերը. պէտք է իրենց քրտինքով լրացնեն իրենց ընտանիքի պակասութիւնը։*

*Գաղթականների մէջ կան բաւականին թուով աշխատանքի ընդունակ անձինք. մի մասը դրանցից երբեմն գտնում է աշխատանք, բայց այդ ձևով աշխատանք գտնելը պատահականութեան կերպարանք ունի. մեծամասնութիւնը իրենցից անկախ պատճառներով մնում է անգործ։ Չը կայ մի կազմակերպուած և յատուկ մարմին որը շարունակ աշխատանքի վրայ կանգնացնի աշխատան,*

քի ընդունակ գաղթականներին։

Ի՞նչ է պարզւում այս բոլոր ասածից։ Թէ ռուսահայերի գիւղացութեան կողմից նկատւում է, որ կայ աշխատանք, բայց չը կան աշխատաւորներ. իսկ տաճկահայերի կողմից նկատւում է, որ կան աշխատաւորներ, բայց չունին աշխատանք։

Ուրեմն մնում է գործը կազմակերպել և կազմակերպել այնպէս, որ աշխատանքը չմնայ առանց աշխատաւորի, իսկ աշխատաւորը՝ առանց աշխատանքի։ Եւ այն ժամանակ կը կատարուի այն, ինչ որ անուանւում է փոխադարձ օգնութիւն։

Այդ նպատակին հասնելու համար անհրաժեշտ է կազմակերպել աշխատանքի ընդունակ տաճկահայերից աշխատաւորների խմբեր (рабочія артели) և այդ խմբերը վաղօրօք մշակուած փոխադարձ համաձայնութեամբ և գիւղացութեան մատչելի պայմաններով ցրել հայ գիւղերը աշխատելու համար։

Օրպէսզի աշխատաւորները աւելի սիրով և եռանդով կատարեն իրենց յանձնուած գործը, շատ նպատակայարմար կը լինի նրանց շահագրգռել, նրանց մասնակից անել արդիւնքին, որը գիւղացութեան համար էլ որոշ յարմարութիւն է ստեղծում, որովհետև աշխատաւորները այդ դէպքում կարող են չափաւորել իրենց ըսկըզբնական աշխատավարձը։ Վաղը, մայիսի 1-ից կայանալու է Երևանում տաճկահայերի համագումարը և ըզբաղուելու է մի շարք խնդիրներով իրենց վիճակին վերաբերեալ։

Մենք ողջունելով համագումարի բացումը, գտնում ենք շատ ցանկալի, որ համագումարը լուրջ կերպով ըզբաղուի և այս հարցով. որ նա կազմի մի առանձին մարմին ձեռնհաս անձերից, և այդ մարմին յանձնի խընդըրի իրագործումը։

Ռուսաստանում ներկայումս գիւղացութեան համար աշխատաւորների խմբեր են կազմւում ոչ թէ հասարակ մշակներից, այլ գիմնազիայի հասակաւոր աշակերտներից, համալսարանների ուսանողներից և այլ ազատ ինտելիգէնտներից, որոնց սրտին շատ մօտ են գիւղացութեան շահերը։

Աշխատաւոր խմբեր կազմելու խնդրի իրագործումը պէտք է կատարուի հրատապ, առանց յետաձգելու։ Այդ խնդրի իրագործումով մեծ ծառայութիւն կը մատուցանուի թէ տեղական գիւղացութեան և թէ գաղթական տաճկահայերին։

Պէտք է գործի դիմել անմիջապէս։ Այդ է պահանջում թէ կովկասահայ և թէ տաճկահայ գիւղացութեան կենսական շահը այս ծանր և անցողական ժամանակում

Ս. Յարութիւնեանց

---

# ԿԱՐԵՒՈՐ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

## ԺԱՄԱՆԱԿԱՒՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹԵԱՆ

Հողային հարցը հողագործ ժողովրդի համար ամենակենսական խնդիրն է։ Զանազան շրջաններում արդէն նկատուել են ագրարային շարժումներ։ Այդ տեսակ շարժումները կարող են առաջ բերել անիշխանութիւն, որը անշուշտ կը խանգարի հարցի արմատական լուծումը Սահմանադիր Ժողովում։

Ժամանակաւոր Կառավարութիւնը, ցանկանալով ընական պայմաններում կատարել հարցի մշակումն և կանխել վտանգաւոր էքսեսներ, հիմնուած ժողովրդի մէջ տարածուող անհիմն լուրերի վրայ, ապրիլի 22-ին արձակել է մի յայտարարութիւն, որը բերում ենք ստորև և որի վրայ հրաւիրում ենք մեր ժողովրդի լուրջ ուշադրութիւնը։

«Մեր երկրի համար ամենագլխաւոր հերթական հարցն է հողային խնդիրը, որ կարող է վերջապէս և ճիշտ լուծել միայն Սահմանադիր Ժողովը՝ ընտրուած ընդհանուր, հաւասար, ուղիղ և գաղտնի ժողովրդական քուէարկութեամբ։ Բայց այդպիսի լուծման համար անհրաժեշտ է նախապէս ամենուրեք տեղեկութիւններ հաւաքել ազգաբնակութեան հողային կարիքների մասին և Սահմանադիր Ժողովի համար պատրաստել հողաշինութեան նոր օրէնք։ Այս նպատակով Ժամանակաւոր Կառավարութիւնը կազմում է հողային գլխաւոր կոմիտէ, որ կը կատարէ այդ աշխատանքը՝ աջակցութեամբ տեղական նահանգային, շրջանային և գաւառական հողային կոմիտէների։ Այդ կոմիտէների վրայ պարտականութիւն է դրւում տեղեկութիւններ հաւաքել տեղական հողային կարգերի և ազգաբնակութեան հողային կարիքների մասին և մինչև Սահմանադիր Ժողովում հողային ռեֆորմ մտցնելը՝ վճռել հողային գործերի շուրջը յարուցուած վէճերն ու թիւրիմացութիւնները։ Տեղական կոմիտէների հաւաքած բոլոր տեղեկութիւնները և նրանց մշակած հողաշինութեան ծրագիրները պիտի յանձնուեն հողային գլխաւոր կոմիտէին, որի աշխատանքներին կը մասնակցեն Պետ. Դումայի ժամ. կոմիտէի, քաղաքական կուսակցութիւնների, կօօպերատիւների համառուսական միութեան, նահանգային հողային կոմիտէների ներկայացուցիչները և Ժամ. Կառավարութեան կողմից հրաւիրուած անձեր։ Միայն այդ ճանապարհով, մանրակրկիտ մշակուելուց և տեղերում բազմակողմանի քննուելուց յետոյ կարող է ուղիղ կերպով լուծման պատրաստուել հողային մեծ ու բարդ հարցը։ Բացորոշ սխալ է կարծել, թէ ամեն մի նահանգ, շրջան և գաւառ կարող են իրենք իրենց լուծել այդ հարցը։ Այդ խնդրում ամբողջ ժողովուրդը կապուած է սերտ կապերով։ Ամեն մի գիւղաքաղաք շահագրգռուած է, թէ ինչպէս կարող է լուծուել հողաշինութիւնը, նոյն իսկ փոքր գիւղակում։ Մեծ աղէտ կը սպառնայ մեր հայրենիքին, եթէ ազգաբնակութիւնը տեղերում, առանց սպասելու Սահմանադիր Ժողովի վճռին, ինքը ստանձնէ անմիջական հողաշինութեան։ Այդպիսի ինքնակամ գործողութիւնները սպառնում եղ

ընդհանուր քայքայում առաջացնել։ Դաշտերը կը մնան առանց ցանքսի, հունձքը չի հաւաքուիլ, երկրում չքաւորութիւնն ու քաղցը կը տիրեն։ Այդ չպէտք է լինի։ Հանդարտ և մեր հայրենիքի ապագայի համար մեր մեծ պատասխանատուութեան գիտակցութեամբ պատրաստուենք ռուս երկրի վերաշինող ժողովրդական Սահմանադիր ժողովի գալուն, որ կը գտնէ հողային հարցի արդարացի լուծումն ու նոր հողային կազմ կը հաստատէ։ Թող հանգիստ լինին մեր քաջարի զինուորները, հայրենի հողի պաշտպանները. Թող վստահ լինին նրանք, որ նրանց բացակայութեան և առանց նրանց մասնակցութեան ոչ ոք նրանց հայրենիքում չի սկսիլ վճռել հողային հարցեր։ Թող իմանան նրանք, որ հողային հարցերում ժողովուրդը չի թոյլատրիլ ինքնիշխանութիւն և հանդարտ կը սպասէ նոր հողաշինութեան, որ կապահովէ աշխատաւոր երկրագործ ազգաբնակութեան իրաւացի շահերը։»

---

## ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՊԱՏԵՐԱԶՄԸ

Կովկասեան ճակատ. Շաբաթուայ ընթացքում ռուս զօրքը թողեց Մուշը և թիւրքական տեղեկութիւնների համաձայն թիւրքերի առաջաւոր զօրամասերը մտան այնտեղ։

Խանըկէնից հիւսիս-արեւմուտք ռուս առաջաւոր զօրամասերը անցան Դիալա գետը։

Ռուսաց ճակատի վրայ շաբաթուայ ընթացքում կարեւոր դէպքեր չեն պատահել։ Մեծ մասով հետախոյզների կռիւներ են տեղի ունենում։ Սվէնցեանի ուղղութեամբ գերմանացիները ձգտում են մտնել ռուսաց խրամատները, բայց յետ են մղւում շարունակ։

Անգլո-Ֆրանսական ճակատ. շատ նշանակալից և լուրջ կռիւներ են ունենում այս ճակատի վրայ։ Ապրիլի 24.25 գերմանացիները յարձակուեցին Սուասոնից հիւսիս-արեւելք և Շմէնդը-Դամի ճանապարհի վրայ։ Կռիւը ստացաւ կատաղի բնոյթ և վերջացաւ ֆրանսացիների կատարեալ աջողութեամբ։ Գերմանացոց զօրքը կրեց լուրջ կորուստներ. ֆրանսացիք առան մօտ 6,200 գերի։ Ապրիլի 3-ին սկսուած ճակատամարտից, ֆրանսացիք գերել են 29,000 գերմանացի։

Ռէյտերի գործակալութեան թղթակիցը ֆրանսացոց զօրաճակատից յայտնում է, որ գերմանացոց զօրքի 2/3-ը կենտրոնացած է Ֆրանսիայում։ Գերմանացոց զօրքի ամբողջ կազմը բաղկանում է 219 զօրաբաժնից (դիւիզեայից), որոնցից 143-ը գտնւում են արեւմտեան զօրաճակատի վրայ, մնացածները ռումինական, ռուսական և մակեդոնական զօրաճակատների վրայ։ Թշնամու կորուստներն ֆրանսական զօրաճակատի վրայ՝ սպանուած, վիրաւոր և գերի հասնում է 200,000 մարդու։

Հինդենբուրգի գծի վրայ սաստիկ կռւով անգլիացիներն առաջացան դէպի Բիւլեկուր գիւղն ու գերիներ առան։

Բալկանեան ճակատում՝ ապրիլի 23-ին Լումինցայի շրջանում ֆրանսացիների և Վենիզելոսեան զօրքի մասնակցութեամբ կռիւներ են մղւում թշնամու զօրքի դէմ։

---

# Ներքին տեսութիւն

---

## ՊԵՏԱԿԱՆ ԿԵԱՆՔ

### ԴԵՊՔԵՐԸ ՊԵՏՐՈԳՐԱԴՈՒՄ

Ապրիլի 20-22-ը Պետրոգրադում պատահել են խիստ կարեւոր անցքեր, որոնց շարժառիթն է եղել այն յայտագիրը, որ արտաքին գործոց նախարար Միլիւկովն ուղարկել էր դաշնակից պետութիւններին։ Այդ յայտագրում Ռուսաստանի արտաքին գործոց նախարարն առաջարկում էր պատերազմը շարունակել մինչև յաղթական վախճան։

Յայտագրի մասին մեծ յուզում առաջ եկաւ Պետրոգրադում. զին. ու բանուորակ. միացեալ խորհուրդը, որ պահանջում է առանց գրաւումի և զինուորական տուգանքի հաշտութիւն կնքել և ընկերվարական զանգուածը, որ պատերազմը նկատում է աշխարհակալական ու դեմոկրատիայի հակառակ մի ձեռնարկ՝ պահանջեցին ժամանակաւոր Կառավարութիւնից գոհացուցիչ բացատրութիւններ։ Ամբոխն յուզուեց, մի մասն արտայայտուեց ի նպաստ ժամանակաւոր Կառավարութեան, մի մասն էլ անվստահութիւն յայտնեց. սակայն այդ բոլոր յուզումների առաջն առնուեց այն ժամանակ՝ երբ գումարուեց նախարարների և զին. ու բանուորական միացեալ խորհրդի խառն ժողովը, որտեղ մտքերի փոխանակութիւնից յետոյ կատարեալ համաձայնութիւն կայացաւ և որոշուեց յայտարարել, որ Ռուսաստանը դիտում չունի հողային գրաւումների, պատերազմական տուգանքների, բայց իւր հայրենիքը պատւով պիտի պաշտպանի մինչև վերջը։

---

## ՍԱՀՄԱՆԱԴԻՐ ԺՈՂՈՎԸ

Մեծ Յեղափոխութիւնները խորտակելով «Հին կարգը»—ազնուապետական միապետութիւնը՝ ժամանակաւորապէս առկախ են թողնում նոր կարգի—նոր պետութեան կազմի ու ձևի հարցը։ Նրանք այս առաջին և գլխաւոր հարցն էլ ժողովրդին են թողնում որոշելու։ Ժողովուրդը պէտք է որոշի՝ թէ ինչպիսի կարգ, ինչպիսի կառավարութիւն է կամենում ինքը։

Եւ այդ միանգամայն իրաւացի է։ Հին, միապետական կառավարութեան օրով ինքնակալ միապետը ինքն էր որոշում ամեն ինչ իւր անսահման կամքով ու բացարձակ կամայականութեամբ Նրա կամքը պետութեան առաջին և վերջին օրէնքն էր։ Ամեն ինչ նա էր որոշում, նշանակում, առնում, ծախում, ինչպէս ինքն էր կամենում։ Եւ բնականօրէն ստեղծում էր այնպիսի կառավարութիւն, որպիսին իւր և իւր նեցուկ տիրող դասակարգերի համար հաճելի էր։ Բացի այդ միապետները աշխատում էին թէ աստուածային-կրօնական և թէ մարդկային-իրաւական բոլոր միջոցներով սրբագործել իրենց բռնապետութիւնը։ Նրանք ամեն կերպ աշխատում էին ժողովրդին համոզել, որ իրենց իշխանութիւնը Աստծուց է, որ իրենք իշխում են «Կամօքն Աստուծոյ», ուստի և իրենց իշխանութիւնը անսահման է։

Ահա այս բացարձակ, իբր թէ «աստուածատուր» և անսահման իշխանութեան Յեղափոխութիւնը հակադրում է Ժողովրդական իշխանութեան սկզբունքն ու ամբողջ հասարակութեան

տարիները սիրտ չէր ունենալ գրիչ շարժելու. նա վիշտս ամբողջովին շալակում էր ու ինձ ոգի ներշնչում, սրտանց կը փափագէի, որ ապագայում մօտս թաղուէր։

Բանաստեղծը խօսք տուեց Սուգի գիշերը իջնել մօտիկ Թանգոյեան եկեղեցին, Ճուղուրեանց քահանայի քարոզը լսելու և դիտելու թէ այստեղի ժողովուրդը որքան վայելուչ է պահում իրան եկեղեցում։ Երբ նա չերեաց, ես Աւագ ուրբաթ, մարտի 31-ին բարձրացայ նրա բնակարանը։ Դուռը բացուելուն պէս լսեցի նըրա կնոջ յուսահատ կականը—հասէ՛ք, Ալէքսանդրը մեռնում է. ինձ թուաց թէ մուրճով ճակատիս զարկեցին. վազեցի նրա պառկելու սենեակը ու գտայ սիրելի բանաստեղծին անկողնում անշարժ, անզգայ մեկնուած, աչքերը փակ, հոգեվարք վիճակում. Բժ. Թամամշեանը նրա շունչը պահելու համար թթուածին էր ածում նրա բերանը։

Աւագ չորեքշաբթի մարտի 29-ին հիւանդը ողջ օրը եղել է տանը, միայն մօտիկ պոստն է իջել ու դարձել. ճաշել է հանգիստ, երեկոյեան տան հիւրերի հետ ուրախ զրուցել, ծիծաղել։ Ժամի 11-ին անկողին է մտել, Կերենսկու ճառը կարդացել, հիացումը յայտնել կնոջը և 12 ժամին իրան վատ զգացել։ Խոխոցի ու փրփուրի-նուաղման նախանշանների վրայ կինը և իրա փեսայ բժ. Թամամշեանը սկսել են սովորական միջոցները ձեռ առնել վըտանգն անցկացնելու համար։ Ալէքսանդրը աչքը բաց, ուշքը վրէն միալար աղաչելիս է եղել, «օդ տուէք, օդ տուէք, խեղդւում եմ»՝ տագնապը տևել է 2 և կէս ժ. գիշերուայ, մինչև նրան վերջերս բուժող պ. Մ. էլ վրայ է հասել։ Յանկարծ հիւանդի վիզը թուլացել է և գլուխը փակ աչքերով ընկել կնոջ կրծքին։ Կարծել են թէ քնում է։ Պառկեցրել են, առաւօտը ուշքի չէ եկել։ Ժողովուել են բժիշկները 2-3 անգամ խորհրդի, ճար չի եղել ուշքի բերելու։ 42 ժամ էր հոգեվարքի մէջ, երբ ուրբաթ ժամի 5-ին անկողնին մօտեցայ։ Անզգայութեան միջոցին ջերմութիւնը 40 աստիճանից պակաս չէր եղած։ Շարունակեցինք թթուածին տալ, բայց անօգուտ, շնչառութունը հետզհետէ դանդաղում էր։ Բժիշկների կարծիքով արիւնահոսութիւն էր տեղի ունեցել ուղեղի մէջ։ Մարտի 31-ի ճաշուայ 6¼ ժամին սիրելի Աղէքսանդրի տանջուած սիրտը դադարեց բաբախելուց, խաղաղ հանգաւ նա, ինչպէս մի պատրոյգ, ինձ այնպէս թուաց թէ քնեց...

Երբ ճակատը համբուրելով անկողնի մօտից հեռանում էի, որ շտապեմ լրագիրներին մահագոյժը յայտնելու, աչքս ընկաւ գըրասեղանի վրայ դրած Հայկ. լեզուի բառգրքին, որ մի քանի օր առաջ երկուսով գնել էինք Գուտտեմբերգ գրախանութից։

Թաղման յանձնաժողովը սուրբ համարելով հանգ. բանաստեղծի կամքը, որոշեց Խոջիվանքում վերցնել երկու գերեզմանատեղ, որ ապագայում մօտը թաղուի իրան խնամող կինը—Վերա Ստեփանեանը։

Թիֆլիս 17 Ապր. Բամալեանց Ս.

## Գ Ա Ւ Ա Ռ

### «ՀԱՄԲԱՒԱԲԵՐ»-ի ԽՄԲԱԳՐՈՒԹԵԱՆ

*Ախալցխա, Մարտի 5-ին*

Փետրուարի 26-ին տեղի ունեցաւ քաղաքիս սպառողական "Помощь" ընկերութեան բաժնետէրերի ընհ. ժողովը։ Այդ սպառողական ընկերութիւնը քաղաքումս առայժմ բաւականանում է միայն կերոսին վաճառելով, որի շնորհիւ առաջն է առել քաղաքումը, այդ մթերքի գինը ուրիշ կերոսինավաճառների կողմից արհեստակամօրէն բարձրացնելու։ Բաժնետէրերի ժողովն ընդունեց և միաձայն հաստատեց ընկերութեան հաշիւը և յայտնեց շնորհակալութիւն վարչութեան եռանդուն և արդիւնաւոր գործունէութեան համար այսպիսի դժուարին ժամանակներում։ Ժողովը ընկ. արդիւնքից ի միջի այլոց 30 ռ. էլ յատկացրեց քաղաքիս հայոց դպրոցներին։

Թ.

——

*Սաչխերէթ*· Փետր 26-ին տեղիս հայոց ուսումնարանի դահլիճում, «Магическій» դիրասան պ. Զաքարիա Կոխտայեանը ներկայացրեց մի քանի դիւթիչ տեսարաններ։ Դահլիճը ծայրէ ի ծայր լի էր հասարակութեամբ։ Վերջը ուսումնարանի աշակերտ-աշակերտուհիները երգեցին մի քանի ազգային ու ժողովրդական երգեր, օր. «Հիմի էլ լռե՞նք», «Թող կոչին տաճիկները», «Դարձեալ փայլեց», «Խումար պառկեր», «Խալիչէքը փռել է», «Մեր հայրենիքը», «Իմ չինար եարը» և «Հին կալայ», որոնք, մանաւանդ մեներգ (սօլօ) «Երազը», մեծ տպաւորութիւն թողեցին հասարակութեան վրայ. Ներկայացումից գոյացաւ 53 ռ., որը պ. Զաքարիա Կոխտայեանը յատկացրեց յօգուտ տեղիս Հ. Բ. Ը.-թեան Սաչխերէթի ճիւղին, որի համար պ.-ին վարչութիւնս յայտնում է խորին շնորհակալութիւն։ Գովասանքի արժանի են նաև տեղիս հայ երիտասարդութեան եռանդը, որը ոչ մի ջանք չէ խնայում դպրոցը բարեկարգ վիճակի մէջ դնելու։

Դաւիթ Բեգալեանց

——

*Բորժոմ.*

Մինչև 1915 թուականը Բորժոմում գոյութիւն է ունեցել Կ Հ. Բ. Ը.-թեան ճիւղը 15 անդամներով. վերջին տարին ինչ ինչ պատճառներից վերոյիշեալ ճիւղը քայքայւում է, որի մասին տեղական վարչութիւնը կենտրոնին չի տալիս ոչ մի պաշտօնական բացատրութիւն։ 13 մարտի 1917 թ. ծխ. դպրոցի աւ. ուսուցիչ պ. Արշալոյս Տիտոսեանի (Գրիգորեան) նախաձեռնութեամբ գումարւում է մի բազմամարդ ժողով, որ մեզ առաջարկում է վերակազմել Բորժոմում. Բ. Ը.-թեան ճիւղը։ Ժողովս միաձայն ընդունում է առաջարկը և անդամակցում են առայժմ 83 հոգի։ Այնուհետև անցնում են վարչութեան ընտրութեան և գաղտնի՝ քուէարկութեամբ ընտրւում են պ. պ. Արշալոյս Տիտոսեան, կապիտան Վարդան Ասլանեան (նախագահ), վաճառակ. Մելիք Յակոբեան (գանձապահ), պոստի չինով. Երուանդ Յակոբեան և Ասլան Գազեան, քարտուղար՝ պ. Արշակ Գրիգորեանց։

Վարչութիւնը այս կարճ ժամանակամիջոցում անցել է 3 էական խնդրի լուծման. I ի նկատի ունենալով որ սիրողների (թատերասէր) տուած ներկայացումներին յաճախում է մեծ բազմութիւն, որ հասարակութեան անդամներից շատ շատերը տեղ չը լինելու պատճառով, տրտունջով ու բողոքով յետ են վերադառնում և որ այդ ներկայացումները տեղի են ունենում դպրոցի դահլիճում, որտեղ կայ անշարժ բեմ, բայց դահլիճը իւ փոքրութեամբ չէ կարողանում բաւարարել հասարակութեան, ճիւղը որոշեց հիմնել «շինարարական ֆոնդ» նորոգելու դպրոցը և մեծացնելու դպրոցի դահլիճը, որի համար և բացուեց հանգանակութիւն, և փոքրիկ Բորժոմը իւր փոքրաթիւ հայերով տուեց ռ.) երկու հազար հարիւր (2,100 ռ.). վարչութիւնը որոշել է շարունակելու հանգանակութիւնը նոյն նպատակով։ II Գրադարան ընթերցարանի խնդիրն էր որ վարչութիւնը որոշեց բանալ Բորժոմում գրադ. ընթեցարան. ժողովականներից մէկը որ առայժմ գաղտնի է պահում իւր անունը, որին երախտաւորում է պ. Ասլան Գազեանը (Բագուի վաճառական) նուիրում է նոր բացուելիք գրադարանին երկու հազար (2,000)ռ. որպէսզի գրադարանը կոչուի իր անունով.

Հարցը դրւում է ընդհանուր ժողովի առաջ. ընհանուր ժողովն ընդունում է առաջարկութիւնը բուռն ծափահարութեամբ և մեծարանքներով և որոշում է գրադ. ընթերցարանը անուանել ՅԿ Հ. Բ. Ը.-թեան Բորժոմի ճիւղի X-եան գրադարան։

Ա խնդիրն էր բանալ Բոժոմում ամառային սէզոնին յօգուտ Ընկերութեան «Մի բաժակ թէյ», իսկ սէզոնից յետոյ ընդհանուր ժողովը կը որոշէ թէ ձմեռուայ ընթացքում պահե՞լ «Մի բաժակ թէյ»-ը թէ ոչ։

## ՀԵՌԱԳՐԵՐ

Տրապիզոնից Ա. Առաքելեանը հեռագրում է, որ Երզընկայից այնտեղ են հասել 16 հայ գաղթական։

Պետրոգրադից Ղուկասեանը հեռագրում է, թէ արդեօք ի՞նչ օգնութիւն է հասցուած Միջագետքի հայութեան և ի՞նչ տեղեկութիւններ կան այնտեղից։ Այդ խնդրի համար որոշուեց հաւաքել լրացուցիչ տեղեկութիւններ Ներսէս Սրբազանից, Թեհրանի կոմիտէից և ապա կազմել առանձին խումբ օգնութիւն հասցնելու համար։

# Տարեգիր

## ՀԱՅԿ. ԿԵՆՏՐՈՆ. ԿՈՄԻՏԷԻ

Ապրիլի 22-ին կայացաւ Հ. Կ. Կոմիտէի հերթական նիստը նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, ուր եղաւ հետևեալ զեկուցումներն ու որոշումները.

ա. Տաճկահայ փախստականների մայիսի 1-ին կայանալիք համագումարի առթիւ ստացուած գրութեան համաձայն՝ Բարեգ. Ընկ. և Հ. Կեդ. Կոմիտէի կողմից իբրև ներկայացուցիչ նշանակուեց կոմիտէիս ընդհանուր լիազօր պ. Ալ. Շարաֆեանցը։

բ. Կոմիտէին կից կազմուած գաղթականական դպ. յանձնաժողովի Նախագահ պ. Խս. Յարութիւնեանը զեկուց, որ մի քանի տեղերից դիմում են իմանալու, երբ ենք դադարեցնելու գաղթ. դպ. ուսումը, գալ տարուայ համար հրաւիրւում են ուսուցչութիւնը, թէ ոչ.

Ի նկատի առնելով այն հանգամանքը, որ շատ տեղերում գաղթ. դպ. աշակերտութիւնը գնում է դաշտային աշխատանքների, որով և խանգարուելու է ընդհանուր դասաւանդութիւնը, որոշուեց հրահանգել գաղթ. դպ. դասերը վերջացնել մայիսի 1-ին, իսկ գալ տարուայ համար ուսուցչութիւնը դեռ չի հրաւիրւում։

գ. Նորին Վեհափառութեան հաճութեամբ Հառիճի վանական դպրոցը յարմարեցուած է որբանոցի։

——

Կ. Հ. Բ. Ը.-թեան Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է-

—Պ. Տիգրան Եսայեանից մատաղի փոխարէն յօգուտ ճաշարանի 50 ռ.։

—Պ. Մինաս Սողոմոնեան Սուլխանեանից Օրդուպատի դըպրոցին նպաստ 300 ռ.

—Պ. Աղէքսանդր Նահիկեանից յօգուտ ճաշարանի 3 ռ.։

—Тиф. Лист.-ի միջոցով Յարութիւնեանի ընտանիքից ի յիշատակ հանգ. Արտիւշի յօգուտ ճաշարանի 25 ռ.։

—Պետրոգրադից պ. Արշակ Պետրոսեան Ոսկանեանից դըպրոցական նպաստ 9,600 ռ.։

——

Կ. Հ. Բ. Ը.-թեան Բաշգիւղի ճիւղի վարչութիւնը շնորհակալութեամբ յունուարի 1-ից մինչև 2-ը ապրիլի 1917 թ. ստացել է տեղիս պահեստի կառավարիչ պ. Լևոն Ջոհրաբեանի միջոցով 223 ռ. 10 կ. զանազան հարսանեաց հանդէսներից՝ 29 ռ. 50 կ. Զոլախլի գիւղում Վահան Պետրոսեանի հարսանիքին պ. Վ. Մախառեճեանի միջոցով հաւաքած 73 ռ., Զոլախլի գիւղի հասարակութիւնից 22 ռ. Տիկ. Եսթեր Ղազանճեանից իր հարս հանգուցեալ Շուշանիկի պսակի փոխարէն 30 ռ.

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏԱԿԱՆ ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Ալիւր ուղարկուած է Ղարաքիլիսա 1 վագոն, Աղէքսանդրապոլ՝ 2, Սարիղամիշ՝ 2, Ղարս՝ 1, Երևան՝ 2, Գանձակ՝ 1, Աղստաֆա՝ 5, Ալաշկերտ՝ 2, Ղամառլու՝ 1 և Սանահին՝ 1, ընդամենը 18 վագոն։

Բացի այս քաղաքում տիրող ալիւրի սուր կարիքի պատճառով, Ընկերութիւնս ստիպուած եղաւ քաղաքային ինքնավարութեան փոխարինաբար տալ 20 վագոն ալիւր։

Սապոն ուղարկուած է Գանձակ 60 պուդ, Երևան՝ 80, Աղէքսանդրապոլ՝ 420 և Սարիղամիշ՝ 100, ընդամենը 660 պ.։

Շաքար և շաքարաւազ ուղարկուած է Գանձակ՝ 95 պ. Ղամառլու՝ 194, Երևան՝ 360, Սարիղամիշ՝ 300, Աղէքսանդրապոլ՝ 510, Աշտարակ՝ 220, Ղարդուղուլի՝ 200 ընդամենը 1,879 պ.։

Կորեկ ուղարկուածէ Խնուս 1,298 պ. և 2, Ալաշկերտ 1,278, ընդամենը 2,576

Սիսեռ ուղարկուած Գանձակ՝ 97, պ. 30, ֆ. Ղարաչինար՝ 25, պ. 10 ֆ. Նոր-Բայազիտ՝ 46, Անեննօ՝ 26 և Ղամառլու՝ 332, ընդամենը 527 պ.

Բրինձ ուղարկուած է Երևան 474 պ. Ղուրդուղուլի և Աշտարակ՝ 600 և Սարիղամիշ 585, ընդամէնը 1659 պ.

# ՔՐՈՆԻԿՈՆ

Անդրկովկասեան առանձին կոմիտէն հաստատել է նահանգական ժողովրդական դպրոցների ուսուցիչների համագումարի կողմից ընտրուած յանձնաժողովը, որ վարելու է նահանգի դըպրոցական գործերը։

— Նախկին կայսր Նիկոլայ II-ի անուան քաղաքային դըպրոցը վերանուանուել է Ալ. Ծատուրեանի անունով։

— Մայիսի 10-ին Թիֆլիսում Հայ Ուսուցչական Համագումարը գումարուելու է պատգամաւորական ներկայացչութեամբ։ Պատգամաւորներ են տալու իւրաքանչիւր 10 հոգուց բաղկացած ուսուցչական խմբերը մի-մի հոգի։ Այն խմբերը, որոնք 10 հոգուց պակաս են՝ իրենց շրջանի ուսուցչութեան հետ կընտրեն պատգամաւորներ նոյն սիստեմով։

— Ապրիլի 23-ին, Ս. Յարութիւնեանի նախագահութեամբ, կայացաւ Թիֆ. վաճառակ. բանկի բաժնետէրերի ընդհանուր ժողովը։ Նախագահը դիմեց ժողովին կարճ խօսքով, թէ ինչպէս բանկի խորհրդի անդամ Ա. Ն. Միլեանը հին ռեժիմի շնորհիւ շատ տառապանք կրեց, մեղադրուելով իբր ծանր յանցաւոր, և յոյս յայտնեց, որ այդ մեղադրանքները անհիմն լինելով, Միլեանի անունը կը վերականգնուի պաշտօնապէս։ Ժողովը ողջունեց ներկայ եղող Միլեանին։ Յետոյ ժողովը հաստատեց 1916 թուի հաշիւը։ Այդ թուին զուտ արդիւնք եղել է 492,966 ռ. 29 կ., որոշուած է ակցիային տալ 20 ռ. դիվիդենտ։ Հաստատուեց 1917 թուի նախահաշիւը։ Որոշուեց լիազօրել վարչութեանը բանկի ճիւղեր բանալ ցուցակում նշանակուած տեղերում։ Վերընտրուեցին վարչութեան անդամներ Մ. Բերբերեան, և խորհրդի անդամներ Ա. Միլեան, Ա. Բաղդասարեան, Ա. Սէյլանեան և Ա. Էնֆիաճեանց։

— Մտադրութիւն կայ Թիֆլիսի կանանց բարձր դասընթացքները անուանել Թիֆլիսի Համալսարան, ազատ թողնելով մտղարդկանց մուտքը։ Թիֆլիսի Համալսարանը ենթարկուելու

էանմիջապէս ժողովրդական լուսաւորութեան մինիստրութեան,
— Քաղաքային պարենաւորման նախորդ վարիչ Մ. Ջաբարն առանձին ռոճիկ չէր ստանում այդ պաշտօնի համար, մինչդեռ պարզւում է,որ յեղափոխութեան ժամանակ կազմուած պարենաւորման նահանգական յանձնաժողովի նախագահ Ն. Ջ. Էլիաւան ( փոխնախագահ Գ. Կաֆեան ) ստանում է ամսական 800 ռ., իսկ օգնականները 600 ական ռ.։ Այս բանը երևան հանեց քաղաքային վարչութեան անդամ Միքայէլ Աթաբէգեանը դումայում մի կրակոտ բանախօսութեամբ. մեղկացումը անգին տպաւորութիւն գործեց իրաւասուների վրայ, որոնք բուռն, որոտընդոստ ծափահարութեամբ թնդացրին դահլիճը։

# Գեղարուեստ

## ՀԱՅ ՈՐԲԵՐԻ ՔԱՅԼԵՐԳԸ

(Հատուած «Եղնիկի փերի»-ից)

Աշուղն ու Նանէն անցան լեռներէն,
Անթաղ զոհերի արեան ծովերէն.
Կորած ձագերի համար ցիրուցան
Աշխարհէ-աշխարհ երգելով անցան.
Հնչում են հեռու աշխարհի չորս դին
Հայրենի հսկայ վշտի մեղեդին.
Սրտերում միշտ վառ նոր կեանքի հոտը՝
Հնչում են, կանչում դեռ դղրդուն-դուռը։
    Ելէ՛ք, երամներ մատղաշ որբերի,
    Ելէ՛ք, քարուանններ վշտոտ ծերերի.
    Դէ, ելէ՛ք, տիրէք հուժկու շարանով
    Երկիրը ներկուած հայի արիւնով։
Ե՛ւ երամները մատղաշ որբերի,
Ե՛ւ քարուանները վշտոտ ծերերի
Դէմ արած կուրծքը անողոք մահին՝
Քայլում են դէպի հայրենիքը հին։
Լարում է Աշուղ ջարդուած բամբիռը,
Երգում է մանուկ սիրոյ թրթիռը.
Նանէի սէրը, Աշուղի երգը
Բուժում են հայի վիթխարի վէրքը։
    Ելէ՛ք, երամներ մատղաշ որբերի,
    Ելէ՛ք, քարուաններ վշտոտ ծերերի,
    Դէ՛, ելէ՛ք, տիրէք հուժկու շարանով
    Երկիրը ներկուած հայի արիւնով։
Վառում է Նանէն օջաղը մարած
Երգում է աշուղ Սիրունը կորած.
Մխում է նորէն ծուխը օջաղի
Հայկական ջարդուած աններկուն ցեղի։
Հնչում է երգը նո՛ր աշխատանքի,
Լոյսի և սիրոյ մե՛ծ յաղթանակի.
Մանուկ Հայաստան նո՛ր կեանքի բոցով
Ապրում է բոլուած արեան հնոցով։
    Ելէ՛ք, երամներ մատղաշ որբերի,
    Ելէ՛ք, քարուաններ վշտոտ ծերերի.
    Դէ՛, ելէ՛ք, ելէ՛ք հուժկու շարանով
    Երկիրը ներկուած հայի արիւնով։

1917 թ. Փետր. 28. ՎԱՀԱՆ ՄԻՐԱՔԵԱՆ

## ՍՏԱՑՈՒԱԾ ԳՐՔԵՐ

1. Ստացանք «Գործ» գրական- գիտական- քաղաքական ամսագրի № 3-ը։
2. Գրական-գեղարուեստական ալմանախ (Նախկին Պատանի)
3. «Ողբ անմահութեան» Վահան Թոթովենցի
4. «Արարատ» ամսագրի № 3
5. «Նախագիծ կանոնադրութեան Հայոց Ազգային- Եկեղեցական Սահմանադրութեան» Մատթէոս եպիսկոպոսի։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ
Հրատարակիչ՝ Կ. Հ. Բ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ



պարան Ն. Աղանեանի Тип. Н. Аганьянца, Полицейская 7.